Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ




№ 24 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1956

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։*





# ՀԻՏԼԵՐՅԱՆ ԶՈՐՔԵՐԻ ՋԱԽՋԱԽՈՒՄԸ ՄՈՍԿՎԱՅԻ ՄՈՏ

Հ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
Գեներալ-մայոր

*1941 թվականի հունիսի 22-ին հիտլերյան Գերմանիան հանկարծակի և ուխտադրուժ հարձակում գործեց Սովետական Միության վրա։*

*Թալանչիական, զավթողական պատերազմ սկսելով Սովետական Միության դեմ, հիտլերականները նպատակ ունեին ոչնչացնել Սովետական պետությունը և նրա բանակը։*

*Հարձակվելով Սովետական Միության վրա, հիտլերյան Գերմանիան ուներ ուժերի ժամանակավոր գերազանցություն, առանձնապես տանկերի և ինքնաթիռների քանակով։ Պատերազմի սկզբին նրա զորքերը լիովին մոբիլիզացված էին։ Բացի դրանից, ՍՍՌՄ-ի վրա հարձակվելու համար հիտլերականները պատերազմի մեջ էին ներգրավել նաև իրենց արբանյակների՝ Ֆինլանդիայի,*

խորտիական Հունգարիայի, բոյարական Ռումինիայի զորքերը, օգտագործում էին բոլոր օկուպացված երկրների նյութական ռեսուրսները, օգնություն էին ստանում Իտալիայի, Ճապոնիայի, Իսպանիայի և մի շարք այլ պետությունների կողմից։ Այսպիսով, սովետական երկրի վրա հիտլերականների հարձակման պահին երկու կողմերի ուժերը բացահայտորեն անհավասար էին։

Համաձայն գերմանական Գլխավոր շտաբի կազմած պատերազմի պլանի, որը հայտնի էր «Բարբարոսի պլան» անունով, հիտլերյան հրամանատարությունը մտադիր էր մեր երկրի արդյունաբերական և ստրատեգիական կենտրոններին հասցվող արագ և ուժեղ հարվածներով կայծակնային կերպով ավարտել պատերազմը Սովետական Միության հետ։ Ֆաշիստական հրամանատարությունը պլանավորել էր գրավել առաջին հերթին Մոսկվան որպես երկրի քաղաքական, տնտեսական և կուլտուրական կենտրոնի։

Ֆաշիստական պարագլուխները գտնում էին, թե մայրաքաղաքի անկումով Սովետական Միությունը կապիտուլյացիայի կենթարկվի։ Այդ նպատակով Հիտլերը Մոսկվայի ուղղությամբ կենտրոնացրել էր խոշոր ուժեր և իր տանկերի ու ավիացիայի գլխավոր



մասսան։ Չնայած հակառակորդի ուժերի բացահայտ գերազանցությանը, այնուամենայնիվ սովետական զորքերը անվեհեր կերպով պայքարի մեջ մտան թշնամու դեմ։ Ամենուրեք սովետական զորքերը հերոսական դիմադրություն էին ցույց տալիս հակառակորդին։

1941 թվականի օգոստոսին Սմոլենսկից հարավ-արևելք Սովետական Բանակը ջախջախեց մեկ տանկային, մեկ մոտոռացված, հինգ հետևակային և մեկ էսէսական դիվիզիա և սեպտեմբերի սկզբին ազատագրեց Ելնյա քաղաքը։ Նույն թվականի սեպտեմբերին սովետական զորքերը Բրյանսկի մոտ պարտության մատնեցին գեներալ Գուդերիանի տանկային խմբավորման զորքերին և նրանց շպրտեցին դեպի արևմուտք։ Հակառակորդն այստեղ կորցրեց մեծ քանակությամբ տանկեր, ավտոմեքենաներ և շատ այլ սպառազինություն։

Սովետական մարդկանց հերոսական դիմադրությունը առաջ բերեց գերմանական ֆաշիստների կատաղությունը։ Օկուպացված սովետական տերիտորիաներում հիտլերականները գազանաբար ծեծում և տանջամահ էին անում գերի ընկած սովետական վիրավոր զինվորներին ու պատանդներին, ոչնչացնում

էին խաղաղ բնակիչներին, կանգ չառնելով նույնիսկ կանանց և երեխաների մասսայական սպանությունների առաջ։

Այդ ժամանակ Մոսկվայի մատույցներում ամրություններ էին կառուցվում քաղաքը ակտիվ պաշտպանության նախապատրաստելու համար։

Առաջվա պես իր գլխավոր նպատակը համարելով Մոսկվայի զավթումը, հիտլերյան հրամանատարությունը այնտեղ կենտրոնացրեց 80 դիվիզիա, որից 22-ը տանկային և մոտոռացված։ Դա մի ահռելի ուժ էր։ Բացի դրանից, այդ դիվիզիաների գործողությունները պետք է պաշտպանեին 1.000 ինքնաթիռ։

Հիտլերյան հրամանատարության պլանի համաձայն Մոսկվայի վրա հարձակումը պետք է կատարվեր հյուսիսից Կալինինի վրա և հարավից Տուլայի վրա թեանցող հարվածներով՝ Մոսկվան շրջապատելու և զավթելու համար։

Սեպտեմբերի 30-ին մարտի մեջ մտցնելով իր գլխավոր ուժերը, թշնամին ընդհանուր հարձակում սկսեց Մոսկվայի ուղղությամբ։ Հոկտեմբեր ամսին նա զավթեց Կալինին, Մոժայսկ, Կլին, Նարոֆոմինսկ, Մալոյարոսլավեց քաղաքները և դուրս եկավ Մոսկվայի



մերձավոր մատույցները։ Հոկտեմբերի 19-ին ՍՍՌՄ Պաշտպանության Պետական Կոմիտեն որոշում ընդունեց Մոսկվայի պաշտպանության կազմակերպման մասին։ Մոսկվա քաղաքը և նրա մատույցները հայտարարվեցին պաշարողական դրության մեջ։ Մոսկվայի մատույցների պաշտպանությունը հանձնարարվեց Արևմտյան ռազմաճակատի զորքերին։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն և Սովետական կառավարությունը մայրաքաղաքի աշխատավորներին, զինվորներին, բոլոր սովետական մարդկանց կոչ արեցին կրծքով պաշտպանել Մոսկվան, վերածել այն անառիկ ամրոցի։ Պարտիայի կոչով ամբողջ երկիրը ոտքի կանգնեց մայրաքաղաքը պաշտպանելու համար։ Ուրալից, Պովոլժյեյից, Սիբիրից և երկրի մյուս շրջաններից գալիս էին նոր համալրումներ, զենք, ռազմական տեխնիկա, պարենամթերք և հագուստեղեն։

Մոսկվայի աշխատավորությունը պարտիական կազմակերպությունների գլխավորությամբ մեծ աշխատանք կատարեց քաղաքի պաշտպանությունն ամրապնդելու համար։ Կարճ ժամանակամիջոցում Մոսկվայի շուրջը ստեղծվեցին հզոր ամրություններ։ Ավելի քան 120.000 կամավորներ մտան ժո-

ժողովրդական աշխարհազորի, իսկ 24.000 մարդ՝ ՀՕՊ-ի ջոկատները: Մոսկվայի պարտիական և կոմերիտական կազմակերպությունները պատերազմի առաջին հինգ ամիսների ընթացքում ռազմաճակատ ուղարկեցին 100.000 կոմունիստներ և 260.000 կոմերիտականներ:

Սովետական Բանակին մեծ օգնություն էին ցույց տալիս փառապանծ պարտիզանները: Թշնամու թիկունքում իրենց ակտիվ գործողություններով նրանք նպաստում էին Մոսկվայի մոտ մղվող մարտերի հաջող ընթացքին: Միայն Մոսկվայի մարզի տերիտորիայում գործում էին ավելի քան 40 պարտիզանական ջոկատներ, որոնք սարսափ էին տարածում հիտլերականների վրա:

Արևմտյան ռազմաճակատի զորքերի անճկուն պաշտպանությունը, որը զուգակցվում էր անընդհատ հակահարձակումներով, ուժասպառ էր անում հիտլերականների հարվածային խմբավորումը և ստիպում էր նրանց դադարեցնել հարձակումը: Մոսկվայի ճակատամարտի ընթացքում մեծ նշանակություն ունեցավ Տուլայի և մի շարք այլ ամրացված կետերի հերոսական պաշտպանությունը, որի ժամանակ ծանր կորուստներ հասցվեցին հակառակորդի 2-րդ տանկային



բանակին: Արդեն պաշտպանողական համառ մարտերի ընթացքում Սովետական Գերագույն Գլխավոր Հրամանատարությունը Մոսկվայից հյուսիս և հարավ խոշոր ռեզերվներ էր կուտակում ֆաշիստական զավթիչներին հզոր հարված հասցնելու համար: 1941 թվականի դեկտեմբերի 6-ին հիտլերականների համար անսպասելի կերպով Արևմտյան ռազմաճակատի զորքերը Կալինինից մինչև Ելեց ձգվող գծով հակահարձակման անցան: Գլխավոր հարվածը մեր զորքերը հասցրին հակառակորդի խմբավորման թևերին, որտեղ գտնվում էին նրա առավել ուժասպառ եղած և թուլացած զորամասերը:

Հակահարձակման անցնելու մոմենտը բացառիկ ճիշտ կերպով էր որոշվել, որովհետև այդ ժամանակ հակառակորդի բոլոր ուժերը ներգրավված էին մարտի մեջ: Հիտլերականներն այդտեղ օպերատիվ ռեզերվներ չունեին: Այդ նույն ժամանակ մեր Գերագույն Գլխավոր Հրամանատարությունը Մոսկվայի մոտ ուներ զգալի քանակությամբ թարմ ռեզերվային զորամասեր:

Սովետական զորքերի հարձակման անցնելու մասին հրամանը մեր զինվորների մեջ հայրենասիրական և մարտական մեծ խանդավառություն առաջացրեց: Նրանք թշնամու

գլխին թափեցին իրենց հարվածների ամբողջ հզորությունը, հիտլերյան օկուպանտների դեմ ատելությամբ բորբոքված իրենց սրտերի ամբողջ ցասումը։ Հակառակորդն իվիճակի չէր պահել մեր զորքերի ճնշումը։ Նա ստիպված էր հապճեպ նահանջել, դեն նետելով տեխնիկան, սպառազինությունը, մերձմոսկովյան դաշտերը ծածկելով իր զինվորների և սպաների դիակներով։ Դեկտեմբերի վերջին ֆաշիստները շպրտվեցին Մոսկվայից հեռու, դեպի արևմուտք։ Սովետական մայրաքաղաքը շրջապատելու և գրավելու հիտլերյան պլանը տապալվեց։ 1941 թվականի նոյեմբերից մինչև 1942 թվականի մարտը ընկած ժամանակամիջոցում սովետական զորքերի կործանիչ հարվածների հետևանքով սովետա-գերմանական ռազմաճակատում ջախջախվեց թշնամու 95 դիվիզիա, այսինքն սովետական զորքերի դեմ գործող գերմանա-ֆաշիստական բոլոր դիվիզիաների կեսից ավելին։ Դրանցից մոտ 70 դիվիզիա պարտություն կրեցին Մոսկվայի մոտ։

Սովետական Բանակը թշնամուց մաքրեց Մոսկվայի և Տուլայի մարզերը, Լենինգրադի, Կալինինի մարզերի մի շարք շրջաններ։ Թըշնամին ետ շպրտվեց 400—500 կիլոմետր



դեպի արևմուտք և սկսվեց Սմոլենսկի և Օրյոլի մարզերի ազատագրումը։

Մոսկվայի մոտ մեր զորքերի տարած մեծ հաղթանակը հօդս ցնդեցրեց հիտլերյան բանակի «անպարտելիության» լեգենդը, թաղեց ՍՍՌՄ-ի դեմ «կայծակնային պատերազմի» պլանները և հանդիսացավ ֆաշիստական ռազմական մեքենայի առաջին խոշոր պարտությունը երկրորդ համաշխարհային պատերազմում։ Այդ հաղթանակը է՛լ ավելի բարձրացրեց Սովետական Բանակի բարոյական և մարտական ոգին, ամրապնդեց սովետական ռազմիկների հավատը հաղթանակի նկատմամբ։ Սովետական Բանակի անձնակազմը, նրա սպայական և գեներալական կադրերը ավելի փորձառու դարձան, կոփվեցին մարտերում։ Սովետական պետությունը և նրա Զինված Ուժերը շատ ավելի ուժեղ դուրս եկան, քան ենթադրում էր թըշնամին։ Սովետական ստրատեգիան, սովետական ռազմական արվեստը և տակտիկան անչափ ավելի բարձր դուրս եկան, քան հիտլերյան ստրատեգիան և շաբլոն տակտիկան։ Այդ հաղթանակը է՛լ ավելի բարձրացրեց Սովետական Միության միջազգային հեղինակությունը և ոգեշնչեց հիտլերականների կողմից ստրկացված Եվրոպայի ժողո-

վուրդներին և նրանց անձնազոհ պայքարի հանեց ֆաշիստական օկուպանտների դեմ։

Մոսկվայի մոտ գերմանա-ֆաշիստական զավթիչների ջախջախումը բացատրվում է ոչ պատահական հանգամանքներով, ինչպես մինչև այժմ էլ փորձում են ներկայացնել իմպերիալիստական երկրների քաղաքական և ռազմական գործիչները։ Այդ հաղթանակի ակունքներն են Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ծնունդ սովետական հասարակական և պետական կարգի մեծ կենսունակությունը, բանվորների և գյուղացիների անխորտակելի դաշինքը, ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, նրանց բարոյա-քաղաքական միասնությունը, ամեն դժվարություն հաղթահարելու պատրաստակամությունը և կարողությունը։

Մոսկվայի մոտ տարած հաղթանակը դա Կոմունիստական պարտիայի և նրա Կենտկոմի հաստատուն ղեկավարության արդյունքն է։ Հայրենիքին սպառնացող այդ ահավոր վտանգի օրերին սովետական մարդիկ է՛լ ավելի սերտ համախմբվեցին իրենց հարազատ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության շուրջը։ Մեծ Լենինի ոգին և նրա հաղթական դրոշը անձնվեր պայքարի ոգեշնչեցին մեր ժողովրդին



նենգ և ուժեղ թշնամու դեմ։ Պարտիայի երկաթե կամքը, նրա կազմակերպչական և դաստիարակչական վիթխարի աշխատանքը ռազմաճակատում և թիկունքում, կոմունիստների ցուցաբերած հերոսության և աշխատանքային արիության անձնական օրինակը մեր ամբողջ ժողովրդին համախմբեցին որպես մի անպարտելի և ահեղ ուժ՝ թշնամուն ջախջախելու համար։

Սովետական հասարակարգի առավելությունները, որ այնպես ցայտուն կերպով երևան եկան Հայրենական Մեծ պատերազմի ընթացքում, նոր ուժով արտահայտվեցին տնտեսական և կուլտուրական շինարարության այն խոշոր հաջողություններում, որոնք ձեռք բերեց մեր ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ հետպատերազմյան ժամանակաշրջանում։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԵՎ ՉԵԽՈՍԼՈՎԱԿՅԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱՆԽԱԽՏ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ

Ա. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

*Սովետական Միության և Չեխոսլովակիայի ժողովուրդները կապված են անխախտելի բարեկամությամբ։ Դրա համար էլ սոցիալիզմի թշնամիների և ռեակցիոն ուժերի բոլոր փորձերը խանգարելու այդ մեծ բարեկամությունը անխուսափելիորեն դատապարտված են ձախողման։*

*Չեխոսլովակիան ունի 128 հազար քառակուսի կիլոմետր տերիտորիա՝ 13,2 միլիոն բնակչությամբ։ Տասնմեկ տարի սրանից առաջ չեխ ժողովուրդը Սովետական Բանակի օգնությամբ ազատագրվեց ֆաշիստական Գերմանիայի օկուպացիայից և կանգնեց սոցիալիստական զարգացման ուղու վրա։*

*Ինչպես բոլոր ժողովրդա-դեմոկրատական երկրների, այնպես էլ Չեխոսլովակիայի տնտեսության զարգացման վճռական նախա-*



*պայման հանդիսացան ժողովրդական իշխանության կողմից իրականացված սոցիալ-տնտեսական ռևոլյուցիոն վերափոխումները։*

*Բանկերի, արդյունաբերության, երկաթուղիների և արտաքին առևտրի ազգայնացման հետևանքով արտադրության հիմնական միջոցները դարձան ժողովրդի սեփականությունը։ Հետագայում ժողովրդական իշխանության քաղաքականության հետևանքով կապիտալիստական տարրերի լիկվիդացումը ընդարձակեց և ամրապնդեց ժողովրդական տնտեսության սոցիալիստական սեկտորը։*

*Ազգային եկամտի մեջ սոցիալիստական սեկտորի տեսակարար կշիռը արդեն 1953 թվականին կազմում էր 92 տոկոս՝ 1949 թվականի 72 տոկոսի փոխարեն։ Արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ 1954 թվականին նա կազմեց 99,7 տոկոս՝ 1949 թվականի 97 տոկոսի փոխարեն, իսկ մանրածախ ապրանքաշրջանառության մեջ 1954 թվականին կազմեց 99,6 տոկոս՝ 1949 թվականի 79,9 տոկոսի փոխարեն։*

*Ելնելով ծանր արդյունաբերության առավել զարգացման լենինյան դրույթից, Չեխոսլովակիայի կոմունիստական պարտիան հատուկ ուշադրություն է դարձնում ծանր ար-*

դյունաբերության էլ ավելի զարգացման վրա որպես սոցիալիզմի կառուցման նյութական բազայի։ Այդ մասին է վկայում այն, որ 1953—1954 թ. թ. ընթացքում, 1948 թվականի համեմատությամբ, արտադրության միջոցների արտադրությունը աճեց 218,7 տոկոսով, իսկ սպառման ապրանքների արտադրությունը՝ 119,3 տոկոսով։

Ծանր արդյունաբերության արագ զարգացման մասին է վկայում արդյունաբերության կարևորագույն տեսակների արտադրանքի աճը։ Այսպես, օրինակ, 1955 թվականին Չեխոսլովակիայում արտադրվել է 63,9 միլիոն տոննա քարածուխ, 1937—38 թ. թ. արտադրված 34,7 միլիոն տոննայի փոխարեն, 3 միլիոն տոննա չուգուն՝ 1937—1938 թ. թ. 1,7 միլիոն տոննայի փոխարեն, 4,5 միլիոն տոննա պողպատ՝ 1937—1938 թ. թ. 2,3 միլիոն տոննայի փոխարեն, 15 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա՝ 1937—1938 թ. թ. 4,1 միլիարդի փոխարեն։

Առավել արագ տեմպով է զարգանում մեքենաշինությունը, որը հանդիսանում է ծանր արդյունաբերության սիրտը։ 1956 թվականին Չեխոսլովակիայում մեքենաշինության արտադրանքի ծավալը ավելի քան 4 անգամ



գերազանցեց նախապատերազմյան մակարդակը։

Այժմ Չեխոսլովակիայի սոցիալիստական արդյունաբերությունը արտադրում է նոր տիպի մետաղամշակման հաստոցներ, էքսկավատորներ, հզոր էլեկտրասարքավորումներ, քիմիական արդյունաբերության համար բարդ սարքավորումներ, նաև նոր տիպի օդանավեր, հեռուստատեսներ և այլ սարքավորումներ, որոնք առաջ Չեխոսլովակիայում չէին արտադրվում։

Չեխոսլովակիայի առավել զարգացած մեքենաշինությունը խոշոր դեր է կատարում մյուս ժողովրդա-դեմոկրատական երկրների ինդուստրացման գործում։

Չեխոսլովակիան ներկայումս դարձել է Եվրոպայի առավել զարգացած պետություններից մեկը ամեն մի շնչին ընկնող պողպատի արտադրանքի ծավալով, առաջ անցնելով Ֆրանսիայից և Շվեդիայից։ Այժմ Չեխոսլովակիան արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալով գրավում է 6—7-րդ տեղը աշխարհում։

Չեխոսլովակիայում լենինյան ազգային քաղաքականության վառ արտահայտություն է հանդիսանում Սլովակիայի տնտեսության արագ վերելքը։ 1937 թվականի համեմատու-

թյամբ Սլովակիայի արդյունաբերության արտադրանքը աճեց 5 անգամ, իսկ արտադրության միջոցների արտադրանքը՝ ավելի քան 7 անգամ։

Չեխոսլովակիայի կոմունիստական պարտիան վերցրել է գյուղատնտեսությունը աստիճանաբար սոցիալիստական ռելսերի վրա տեղափոխելու կուրս։

Ռևոլյուցիոն ագրարային ռեֆորմի հետևանքով Չեխոսլովակիայում լիկվիդացվեց կալվածատիրական հողատիրական սիստեմը։ Կալվածատիրական հողերի մեծ մասը հանձնըվեց հողազուրկ և սակավահող գյուղացիներին։ Չեխոսլովակիայում 250 հազար հողազուրկ և սակավահող գյուղացիներ ստացան մոտ 4,4 միլիոն հեկտար հող։

Ներկայումս Չեխոսլովակիայում բարձր տիպի արտադրական կոոպերատիվների թիվը, 1949 թվականի 1911-ի փոխարեն, հասնում է 8 հազարի, որոնցում ընդգրկված են 238 հազար գյուղացիական տնտեսություններ։ Գյուղատնտեսության մեջ սոցիալիստական սեկտորը, այդ թվում նաև պետական տնտեսությունները, մշակում են երկրի վարելահողերի 43 տոկոսից ավելին։ 1955 թվականին Չեխոսլովակիայի գյուղատնտեսության մեջ աշխատում էր 37 հազար տրակ-



տոր, որից 24 հազարը գտնվում էր մեքենա-տրակտորային կայաններում։

Այժմ գյուղատնտեսության մեջ սոցիալիստական սեկտորը կարևոր դեր է կատարում հատկապես գյուղատնտեսական կարևորագույն մթերքների արտադրման տեսակետից։ Այդ մասին է խոսում այն փաստը, որ 1955 թվականին սոցիալիստական սեկտորից ըստացած հացահատիկը կազմեց մթերված ամբողջ հացահատիկի 46 տոկոսը, խոզի միսը՝ 59 տոկոսը, տավարի միսը՝ 47 տոկոսը, կաթը՝ 43 տոկոսը, շաքարի ճակնդեղը՝ 57 տոկոսը և այլն։

Չեխոսլովակիայի արդյունաբերության և գյուղատնտեսության անշեղ վերելքի բազայի վրա զգալիորեն բարձրացել է նաև ժողովրդի նյութական բարեկեցությունը։

Չեխոսլովակիայում սիստեմատիկաբար աճում է աշխատավորների ռեալ աշխատավարձը։ 1949—1954 թ. թ. ընթացքում աշխատավորների ռեալ աշխատավարձը աճեց 45 տոկոսով։ 1953—1956 թ.թ. ընթացքում վեց անգամ անց է կացված գների իջեցում։ Անց են կացված մի շարք կարևոր միջոցառումներ, որոնք բարելավում են գյուղատնտեսական կոոպերատիվների անդամների նյութական դրությունը։ Այսպես, օրինակ, բարձրացվե-

ցին գյուղատնտեսական մթերքների մթերման և գնման գները, իջեցված է պարարտանյութի գինը, ինչպես նաև պարտադիր հանձնումների չափը։

Կառավարությունը աշխատանքային օրը իջեցրել հասցրել է շաբաթվա ընթացքում 46 ժամի, իսկ դեռահասների համար՝ մինչև 36 ժամի։

Չեխոսլովակիայում, ինչպես նաև մյուս ժողովրդա-դեմոկրատական երկրներում իրականացվում է իսկական կուլտուրական ռևոլյուցիա. անշեղ կերպով աճում է դպրոցների, բուհերի, գրադարանների, թատրոնների և կինոների թիվը։ Մասսայական տիրաժով հրատարակվում են մարքսիզմ-լենինիզմի կլասիկների գործերը։ Զարգանում է ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական արվեստը, գրականությունը։ Այժմ Չեխոսլովակիայում բուհերի թիվը հասնում է 39-ի՝ մինչ պատերազմը եղած 13 բուհի փոխարեն։ Ուսանողների թիվը նախապատերազմյան մակարդակի հետ համեմատած աճել է 2 անգամ։

Ժողովրդական իշխանության հոգատարությունը կուլտուրական շինարարության նըկատմամբ վառ կերպով երևում է պետական բյուջեից։ 1955 թվականին Չեխոսլովակիայի



պետական բյուջեի 1/3-ը ծախսվեց սոցիալ-կուլտուրական միջոցառումների վրա։

Չեխոսլովակիայի այս հաջողությունների կարևորագույն հիմքերից մեկը գնալով ամրապնդվող սովետա-չեխական բարեկամությունն է, որը ծնունդ է առել երկրորդ համաշխարհային պատերազմի փոթորկալի օրերին։

Չեխոսլովակիան ՍՍՌՄ-ից ստանում է հացահատիկ, բամբակ, բուրդ, գունավոր մետաղներ, երկաթի հանքաքար, գյուղատընտեսական մեքենաներ։ Իսկ ՍՍՌՄ-ը Չեխոսլովակիայից ստանում է հաստոցներ, էլեկտրակայաններ, մարդատար դիզելներ, գետային բուքսիրներ և այլն։

Օրավուր ընդլայնվում է ՍՍՌՄ-ի և Չեխոսլովակիայի գիտա-տեխնիկական և կուլտուրական համագործակցությունը։ Չեխոսլովակիայի պայքարը խաղաղության և դեմոկրատիայի համար օրավուր բարձրացնում է նրա միջազգային հեղինակությունը։

Սովետա-չեխոսլովակյան բարեկամության մեկամսյակը ցույց է տալիս, որ չեխոսլովակյան ժողովուրդը վճռականորեն կանգնած է սոցիալիզմի ուղու վրա և Սովետական Միության հետ պաշտպանում է խաղաղության գործը ամբողջ աշխարհում։

---

# ՀԵԿՏԱՐԻՑ 500 ՑԵՆՏՆԵՐ ՇԱՔԱՐԻ ՃԱԿՆԴԵՂ

Ա. ԲԱՀԴՈՒՀԱՆՅԱՆ

Սպիտակի շրջանի Մեծ Պարնիի Շահումյանի անվան կոլտնտեսության օղակավարուհի

*Քսան տարի է, ինչ աշխատում եմ որպես ճակնդեղագործ, սակայն ես չեմ հիշում այնպիսի տարի, որ մեր կոլտնտեսությունը այս տարվա նման բարձր բերք ստացած լիներ։*

*Մեր կոլտնտեսությունը հեկտարից 350 ցենտներ շաքարի ճակնդեղ հանձնեց շաքարի գործարան, իսկ օղակավարուհիներ Ցողիկ Աշուղաթոյանի, Ռոզա Ավետյանի, Լենա Գասոյանի և իմ օղակները հեկտարից հավաքեցին 450—500 ցենտներ ճակնդեղ։*

*Անցյալ տարի միայն ճակնդեղից կոլտնտեսությունը 800 հազար ռուբլու եկամուտ ունեցավ։ Այս տարի այդ գումարն ավելի կմեծանա։ Մեզանից յուրաքանչյուրը ամեն մի աշխօրի դիմաց ստանում է 4,5 կիլոգրամ հացահատիկ, 6 ռուբլի դրամ, զանազան*



*մթերքներ, 2 հազար ռուբլի դրամ որպես պարգև-հավելում։ Իմ դրամական պարգևհավելումը կազմում է մոտ 4 հազար ռուբլի։ Մեր կոլտնտեսությունը պետությունից 35 տոննա շաքարավազ կստանա՝ կոլտնտեսականներին աշխօրերի դիմաց բաժանելու համար։*

*Ես կցանկանայի հակիրճ պատմել, թե ինչպես մենք հասանք ճակնդեղի բարձր բերքատվության։*

*Նախքան խոր վար կատարելը, հողամասը պարարտացնում ենք տեղական պարարտանյութով, հեկտարին տալով 6 և ավելի տոննա գոմաղբ։ Եթե ճակնդեղին նախորդած ցանքը հացահատիկային կուլտուրա է եղել, այդ դեպքում բերքահավաքից հետո ՄՏ կայանի միջոցով խոզանի երեսվար ենք կատարում, հարթեցնում այն։ Դրանով ոչնչացնում ենք մոլախոտերը և պահպանում հողի մեջ եղած խոնավությունը։ Խոզանի երեսվարից 10—15 օր հետո կատարվում է խոր վարը։*

*Մեր օղակում լուրջ ուշադրություն է դարձվում ցանքի համար սերմի ընտրությանն ու նախապատրաստմանը։ Նախ մաղելու միջոցով սերմը մաքրում ենք թեփից, հողից ու մանր, անորակ սերմերից և հետո կատարում ախտահանում։ Ցանքից 3 օր առաջ սերմա-*

ցում խոնավացնում ենք։ Դա արագացնում է սերմի ծլման պրոցեսը և ավելի ուժեղ ծիլեր է ստացվում։ Այդպիսի ուժեղ ծիլերը քիչ են վարակվում արմատակեր հիվանդությամբ, միաժամանակ լավ են դիմանում ջրի պակասին։

Իսկ ե՞րբ ենք ցանում։ Սովորաբար ցանքը սկսում ենք ապրիլի կեսերին, սակայն այդ պարտադիր ժամկետ չէ։ Երբ հողի ջերմությունը հասնում է 8—10 աստիճանի, կամ ինչպես ասում ենք՝ «քեշի» է գալիս, սկսում ենք ցանքը, որը կատարում ենք կարճ ժամկետում։ Օրինակ, այս տարի մենք ցանքն ավարտեցինք 7 աշխատանքային օրում, անցյալ տարվա 9 օրվա փոխարեն։

Ցանք կատարելը փաստորեն մեր աշխատանքի սկիզբն է միայն։ Շաքարի ճակնդեղի բարձր բերքատվության հասնելու հիմնական նախապայմանը լավ մշակությունն է։ Առանց ուշացման կատարում ենք շարովկա, այսինքն հողի մակերեսային փխրեցում, որով ոչնչացնում ենք մոլախոտերը, օդը առատորեն մուտք է գործում հողի մեջ և օգնում է ծիլերի արագ ու լրիվ աճմանը։

Անցյալ տարիներում մենք շարովկան անց էինք կացնում հազիվ 10—15 օրում, իսկ այս տարի աշխատանքի ճիշտ կազմակերպ-



ման շնորհիվ, այդ կարևոր պրոցեսը կատարեցինք 4—5 օրում։

Մեր հաջորդ աշխատանքը նոսրացումն էր, որը կատարեցինք մայիսի 10-ից 15-ը։ Նոսրացման ժամանակ մենք բույսերի որոշ մասը հեռացրինք, ստացանք ցանքի այնպիսի խտություն, որ մնացած բույսերը սկսեցին ավելի արագ աճել։ Բացի այդ, ստեղծվեցին մեքենայական աշխատանքի և ոռոգման համար նպաստավոր պայմաններ։ Նոսրացման աշխատանքը մենք նույնպես կատարեցինք ժամանակին։

Նոսրացման ժամանակ անպայման դաշտը ոռոգում էինք, իսկ եթե բաց մնացած տեղեր էին նկատվում, տեղն ու տեղը լրացուցիչ ցանք, կամ սածիլում էինք կատարում։

Նոսրացման աշխատանքները կատարելուց հետո մենք անցանք քաղհան-փխրեցմանը։ Այս կատարելով, մենք կրկին անգամ ոչնչացրինք մոլախոտերը, ավելի հեշտացրինք օդի մուտքը հողի մեջ, բարենպաստ պայմաններ ստեղծեցինք ոռոգման համար։

Նոսրացման ու փխրեցման աշխատանքը մեկ անգամ չէ, որ մենք կատարում ենք։ Մեր օղակը իր դաշտը միշտ փուխր է պահում, առանց որևէ մոլախոտի։ Ոռոգումից 2—3 օր հետո միջշարքային տարածություն-

ները նորից փխրեցրինք։ Այս տարի ամառվա ընթացքում վեց փխրեցում կատարեցինք, իսկ փխրեցման խորությունը հասցրինք մինչև 14 սանտիմետրի։ Այդ մեծ չափով նպաստեց ճակնդեղի բերքատվության բարձրացմանը։

Մեր աշխատանքների մեջ կարևոր տեղ է գրավում սնուցման գործի կազմակերպումը։ Այս տարի մենք հողերը պարարտացրինք ազոտով, ֆոսֆորով, կալիումով, ինչպես նաև գոմաղբով, թռչնաղբով ու այլ պարարտանյութով։ Տարբեր ժամանակներում մենք վեց անգամ ցանքին սնուցում տվեցինք, հիմնական սնուցումը անցկացնելով աշնանը՝ խոր վարի ժամանակ։ Այդ օրերին հատկապես մենք հողը պարարտացրինք լավ հասունացած գոմաղբով։ Մեծ ուշադրություն ենք դարձնում նաև ցանքի ոռոգման կազմակերպմանը։

Բոլոր ցանքերը ոռոգեցինք ակոսային եղանակով, որի ժամանակ ջուրը ավելի ռացիոնալ է օգտագործվում և բոլոր բույսերը նորմալ խոնավություն են ստանում։ Ժամանակին ու ռեժիմով ջուր տալը նույնպես մեծ չափով է նպաստում բույսի արագ ու նորմալ աճմանը։ Առաջին ջուրը մենք տվեցինք հունիսի վերջերին, երկրորդ ջուրը՝ 15—16 օր



հետո, իսկ այնուհետև յուրաքանչյուր 8 օրը մեկ անգամ ցանքը ջրել ենք։ Ջուրը բաց ենք թողնում դանդաղ, քիչ-քիչ, այլապես մեծ հոսանքով եկած ջուրը կարող էր ցանքերը հեղեղել, արմատահան անել բույսերը։

Մեր աշխատանքն այս բնագավառում զուր չանցավ։ Մենք կարողացանք մեր օղակի 6,8 հեկտար ցանքատարածությունը պահպանել վնասատուներից և ապահովել ճակնդեղի բարձր բերքի ստացումը։ Սեպտեմբերի 25-ին, երբ ճակնդեղահան մեքենայի հետևից մենք դաշտ դուրս եկանք ու սկսեցինք ճակնդեղը հանել, առաջին գոյացած հսկա կույտերն արդեն ասում էին այն մասին, որ մենք բարձր բերք ենք ստանալու։

Բերքահավաքն սկսեցինք ճակնդեղի լրիվ հասունացման շրջանում, երբ ճակնդեղի տերևները մուգ կանաչ գույնից փոխվել էին բաց-կանաչ գույնի, իսկ ներքևի տերևները սկսել էին դեղնել։

Ավարտելով բերքահավաքը մենք արդեն ձեռնամուխ ենք եղել 1957 թվականի ցանքի նախապատրաստմանը։ Չենք գոհանա ձեռք բերածով, հաջորդ տարի ավելի լավ կաշխատենք, ավելի խնամքով կմշակենք դաշտերը և երկրին ավելի շատ շաքարի ճակնդեղ կտանք։

# ԱՐԱԲԱԿԱՆ ԱՐԵՎԵԼՔ

## (ՏԵՂԵԿԱՆՔ)

Արաբական Արևելքը մի ընդարձակ շրջան է, որի մեջ մտնում են հետևյալ պետությունները՝

Եգիպտոսը (23 միլիոն 240 հազար բնակչությամբ), Իրաքը (5 միլիոն բնակչ.), Հորդանանը (1,5 միլիոն բնակչ.), Սաուդյան Արաբիան (մոտավորապես 7 միլիոն բնակչ.), Սիրիան (3,670 հազար բնակչ.), Լիբանանը (1,5 միլիոն բնակչ.), Եմենը (4,5 միլիոն բնակչ.), Ադենը (80 հազար բնակչ.), Բահրեյնյան կղզիները (112 հազար բնակչ.), Կուվեյտը (200 հազար բնակչ.) Մասկատը (250 հազար բնակչ.), Կատարը (30 հազար բնակչ), Պայմանագրային Օմանը (80 հազար բնակչ.)։

Արաբական Արևելքը գրավում է ավելի քան 4,1 միլիոն քառակուսի կիլոմետր տարածություն, որտեղ ապրում են մոտ 48 միլիոն մարդ։ Ի դեպ, Արաբական աշխարհը ավելի ընդարձակ է, քան Արաբական Արևելք հասկացողությունը, քանի որ արաբական աշխարհի մեջ են մտնում նաև արաբներով բնակեցված այնպիսի պետություններ, ինչպիսիք են՝ Սուդանը, Լիվիան, Թունիսը, Ալժիրը և Մարոկկոն։



Իմպերիալիստական տերությունները ամեն կերպ շահագրգռված են Արաբական Արևելքի վրա հաստատել իրենց քաղաքական, տնտեսական և ռազմական լիակատար վերահսկողությունը։ Ինչպես գիտենք, աշխարհի նավթի հայտնի պաշարների 50 տոկոսից ավելին գտնվում է Բահրեյնյան կղզիների, Իրաքի, Կուվեյտի, Կատարի, Սաուդյան Արաբիայի ավազուտների տակ։ Ավելին, այս երկրներն ունեն ռազմա-ստրատեգիական նշանակություն, քանի որ այստեղով են անցնում համաշխարհային կարևորագույն նշանակություն ունեցող ջրային, օդային և ցամաքային մի շարք ուղիներ։

Իմպերիալիստական պետությունները դեռևս անցյալ դարի 20-ական թվականներից մեծ հետաքրքրություն ցուցաբերեցին Արաբական Արևելքի նկատմամբ։ Արևմտյան տերություններից առաջինը Անգլիան էր, որը 1820 թվականին օկուպացիայի ենթարկեց Պիրատի ափը, այն վերանվանելով Պայմանագրային Օման, 1839 թվականին Անգլիան զավթեց Ադենը դարձնելով այն իր գաղութը։ 1882 թվականին անգլիական զորքերը օկուպացրին Եգիպտոսը։

1899 թվականին Անգլիան Թյուրքիայից խլեց Կուվեյտը, դարձնելով այն իր պրոտեկտորատը։ Սիրիան, Լիբանանը, Իրաքը, որոնք մինչև առաջին համաշխարհային պատերազմը գտնվում էին օսմանյան Թյուրքիայի կազմում, հետագայում անցան անգլո-ֆրանսիական գաղութարարներին։ Արդեն 1920 թվականին

ամբողջ արաբական երկրները՝ Մարոկկոյից մինչև Բահրեյնյան կղզիները, ընկած էին անգլո-ֆրանսիական իմպերիալիստների տիրապետության տակ։ Տխրահռչակ Սան-Ռեմոյի 1920 թվականի կոնֆերանսը Իրաքը, Անդրհորդանանը, Լիբանանը, Սիրիան և մյուս երկրները կառավարելու մանդատը տվեց անգլո-ֆրանսիական գաղութարարներին։ Փաստորեն այսպես կոչված մանդատային այդ սիստեմը ոչ այլ ինչ էր, քան գաղութակալության քողարկված մի ձև՝ այդ երկրները կեղեքելու և թալանելու համար։

Իմպերիալիզմի դարաշրջանում ավելի մեծացավ Արաբական Արևելքի երկրների տնտեսական նշանակությունը։ Եթե սկզբնական շրջանում այս երկրները ծառայում էին մետրոպոլիաներին, որպես զուտ գյուղատնտեսական մթերքներ մատակարարողներ, ապա հետագայում սրանք դարձան իմպերիալիստներին նավթ մատակարարողներ։ Վերջին տարիներս իմպերիալիստական տերությունները անխնա կերպով թալանում էին այս երկրների նավթային հարստությունները։ Այսպես, օրինակ, եթե 1945 թվականին գաղութարարները Արաբական Արևելքից տարան 27 միլիոն տոննա նավթ, 1950 թվականին 88,5 միլիոն տոննա, ապա 1955 թվականին՝ 155 միլիոն տոննա, որից միայն փոքրիկ Կուվեյտից՝ 55 միլիոն տոննա և Սաուդական Արաբիայից՝ 47 միլիոն տոննա։

Չնայած նման հարստությունների առկայությանը,



այնուամենայնիվ, այս երկրների ժողովուրդները ապրում էին դառն աղքատության մեջ, զրկված էին նույնիսկ տարրական կրթություն ստանալու հնարավորությունից։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, որը մարդկության պատմության մեջ բացեց նոր դարագլուխ, ամենածանր հարվածը հասցրեց իմպերիալիզմի գաղութային սիստեմին։

Ռևոլյուցիային հաջորդող տարիներին, նրա անմիջական ազդեցության տակ, սկսեցին հսկայական թափով ծավալվել ազգային-ազատագրական ու հակաիմպերիալիստական շարժումները։

1919—1920 թ. թ. Արաբական Արևելքում լայն թափ ստացան ազգային-ազատագրական շարժումները։ 1919 թվականին Եգիպտոսում զինված պայքար սկսվեց անգլիական իմպերիալիստների դեմ։

1922 թվականի փետրվարին Անգլիան ստիպված եղավ վերացնել իր պրոտեկտորատը Եգիպտոսի նկատմամբ և այն հայտարարել «անկախ թագավորություն»։ Սակայն 1936 թվականին անգլիական իմպերիալիստները Եգիպտոսի վզին փաթաթեցին այսպես կոչված «դաշնակցային» ռազմական պայմանագիր, որով Անգլիան լիիրավ օգտագործում էր Եգիպտոսի մի շարք քաղաքներ, որպես ռազմական բազաներ։

1919 թվականին Սիրիայի, Լիբանանի ժողովուրդները զինված պայքար սկսեցին ֆրանսիական գաղութարարների դեմ, որը ընդմիջումներով տևեց 10 տարի։

Այդ պայքարի հետևանքով ֆրանսիական գաղութարարները 1936 թվականին կնքեցին պայմանագիր և խոստացան 3 տարուց հետո լիկվիդացնել այդ երկրները տիրապետելու իրենց մանդատը։ Սակայն Ֆրանսիան իր խոստումը չկատարեց։

Երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտումից հետո, ազգային-ազատագրական շարժումները Սիրիայում և Լիբանանում նոր թափ ստացան։ Այս երկու երկրների հարցը մտցվեց ՄԱԿ-ի սեսիա, որտեղ Սիրիայի և Լիբանանի անկախության գործը ջերմ կերպով պաշտպանեց Սովետական Միությունը։ Ֆրանսիան ստիպված եղավ իր զորքերը դուրս բերել այդ երկրներից և 1947 թվականի հունվարին Արաբական Արևելքում առաջին անգամ ստեղծվեցին արաբական երկու անկախ պետություններ։ Իր ազատագրության համար հերոսաբար է պայքարել Պաղեստինի ժողովուրդը։ 1947 թվականի նոյեմբերի 29-ին, ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի որոշմամբ Պաղեստինի տերիտորիայում նմանապես ստեղծվեցին երկու անկախ պետություններ՝ արաբական Պաղեստինը և հրեական Իսրայելը։ 1946 թվականի մարտի 22-ին, մեծ պայքարով վերացվեց Անդրհորդանանի վզին փաթաթված անգլիական մանդատը։ 1949 թվականին Անդրհորդանանին միացվեց Արաբական Պաղեստինը։ Անդրհորդանանի թագավոր Էմիր Աբդուլլան այդ օրվանից երկիրը վերանվանեց Հորդանան։

Վերջին տարիներս սկսվել է Արաբական Արևելքի



ժողովուրդների վերածնության ու մեծ պայքարի պրոցեսը։ Ինչպես վերևում ասացինք, այդ պայքարը պսակվեց մեծ հաջողությամբ։ Այսպես, օրինակ՝ 1951 թվականին, իմպերիալիզմի գաղութային սիստեմին մեծ հարված հասցրեց եգիպտական ժողովուրդը։ Նա չեղյալ հայտարարեց 1936 թվականին Անգլիայի հետ կնքված ռազմական ստրկացուցիչ պայմանագիրը։ Երկրում միաժամանակ ուժեղանում էր հակաֆեոդալական և հակամիապետական շարժումը, որը 1952 թվականի հուլիսի 23-ին հանգեց միապետական ռեժիմի տապալմանը։ Ֆարուկ թագավորը գահընկեց արվեց և արտաքսվեց երկրի սահմաններից։ Ողջ իշխանությունն անցավ «Ղեկավար ռևոլյուցիոն խորհրդի» ձեռքը։ 1953 թվականի հունիսին Եգիպտոսը հռչակվեց ռեսպուբլիկա։

1954 թվականի հոկտեմբերի 19-ին կնքվեց անգլո-եգիպտական համաձայնագիր՝ 20 ամսվա ընթացքում Սուեզի ջրանցքի գոտուց անգլիական զորքերը դուրս բերելու մասին։

1956 թվականի հունիսի 23-ին Եգիպտոսը ընդունեց նոր կոնստիտուցիա, որով Եգիպտոսը հռչակվեց սուվերեն և անկախ արաբական պետություն, իսկ պետական կարգը՝ ռեսպուբլիկական։ Եգիպտական ռեսպուբլիկայի առաջին պրեզիդենտ ընտրվեց գնդապետ Գամալ Աբդել Նասերը։

Եգիպտական ժողովրդի շատ տասնամյակների ընթացքում մղած համառ, անձնուրաց պայքարը պսակ-

վեց նոր հաղթանակով, երբ 1956 թվականի հուլիսի 26-ին նախկին «Սուեզի ջրանցքի համաշխարհային ընկերության վարչության» շենքի վրա պատմության մեջ առաջին անգամ բարձրացվեց եգիպտական պետական դրոշը։

Տարիներ ի վեր իրենց ազատագրության և անկախության համար են պայքարում արաբական թերակղզու վրա գտնվող մի շարք փոքր երկրների ժողովուրդները։ Հենց վերջին ժամանակներս, անգլիական իմպերիալիստները ռմբակոծության ենթարկեցին Բուրայմի օազիսը (Սաուդական Արաբիա), Եմենի հարավային շրջանները և այլ վայրեր։ Անգլիական գաղութարարները ճնշում են Օմանի, Ադենի, Կատարի ժողովրդական շարժումները։

Արաբական աշխարհի ժողովուրդների հերոսական պայքարը ոգևորեց Սուդանի 9 միլիոնանոց ժողովրդին, որը երկարամյա պայքարից հետո 1956 թվականի հունվարին ձեռք բերեց անկախություն։

Համառ պայքար են մղել անկախության և ազատության համար նաև արաբական այնպիսի երկրներ, ինչպիսիք են Ատլասի երկրները՝ Մարոկկոն, Թունիսը և Ալժիրը։ 1956 թվականի մարտին ֆրանսիական գաղութարարները ստիպված ճանաչեցին Թունիսի և Մարոկկոյի անկախությունը։ Երևան եկան ևս երկու անկախ, գաղութային լծից ազատագրված արաբական պետություններ։ Երկու տարի է, ինչ արյունահեղ պատերազմ է գնում Ալժիրում, մեկ կողմից ֆրանսիական գաղու-



թարարների, մյուս կողմից՝ Ալժիրի ժողովուրդների միջև։ Ոչ մի կասկած չկա, որ Ալժիրի ժողովուրդը ևս ձեռք կբերի իր ազատությունը և անկախությունը։

Քաղաքական մեծագույն իրադարձություն է արաբական պետությունների սերտ համագործակցությունը։

1956 թվականի նոյեմբերի 15-ին, Բեյրութում բացվեց Արաբական Արևելքի երկրների ղեկավարների խորհրդակցությունը, որ անարգանքի սյունին գամեց անգլո-ֆրանս-իսրայելական ագրեսորներին։ Նոյեմբերի 21-ին Արաբական Արևելքի 11 երկրներ հատուկ նամակով դիմեցին ՄԱԿ-ի սեսիային, խնդրելով կտրուկ միջոցներ ձեռք առնել անգլո-ֆրանս-իսրայելական ագրեսորների նկատմամբ։ Վերջին ժամանակներս արաբական շատ երկրներ խզել են դիվանագիտական հարաբերությունները վերոհիշյալ ագրեսիվ երկրների հետ։

Արաբական Արևելքի ժողովուրդների ազգային անկախության և ազատության համար մղվող պայքարի ջերմ պաշտպանն են Սովետական Միությունը, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան և ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրները։

Սովետական Միությունը պաշտպանել և այժմ էլ շարունակում է պաշտպանել Եգիպտոսի, Սաուդյան Արաբիայի, Սիրիայի, Լիբանանի, Եմենի և արաբական մյուս երկրների ճնշվող ու հարստահարվող ժողովուրդների շահերը և հաստատակամորեն կանգնած է նրանց իրավունքների պաշտպանության դիրքերում։

Գ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## *1. ՆՈՐ ՏԱՐԻՆ ԴԻՄԱՎՈՐԵՆՔ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿՊ 20-րդ համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի 20-րդ համագումարին, *Հայպետհրատ, 1956։*

Մ. Ա. ՍՈՒՍԼՈՎ— *Հոկտեմբերյան* Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 39-րդ տարեդարձը, *զեկուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի նոյեմբերի 7-ի համարում։*

Աշխատանքի բարձր արտադրողականության վարպետները, *նյութեր աշխատանքի առաջավորների հաջողությունների մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի դեկտեմբերի 11-ի համարում։*



## *2. ԱՆԹԵՐԻ ԿԱՏԱՐԵՆՔ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ*

*(Զրույցն անցկացնել տեղական նյութերով)։*

## *3. ԼՐԻՎ ԿԱՐՈՂՈՒԹՅԱՄԲ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ԶԵՌՆԱՐԿՈՒԹՅԱՆ ՏԵԽՆԻԿԱՆ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— *Հաշվետու* զեկուցում ՍՄԿՊ 20-րդ համագումարին, *Հայպետհրատ, 1956, էջ 65—76։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Զեկուցում ՍՄԿՊ 20-րդ համագումարի Դիրեկտիվների մասին, *Հայպետհրատ, 1956, էջ 18—36։*

Արտադրության ռացիոնալիզատորների, գյուտարարների և նորարարների Համամիութենական խորհրդակցության մասնակիցների *ԴԻՄՈՒՄԸ Սովետական Միության բոլոր բանվորներին և բանվորուհիներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին և ծառայողներին, գիտության և տեխնիկայի գործիչներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հոկտեմբերի 26-ի համարում։*

## *4. ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ ՀԱՄԱՐՁԱԿՈՐԵՆ ԱՐՄԱՏԱՎՈՐԵՆՔ ՆՈՐԱՐԱՐՆԵՐԻ ԱՐԺԵՔԱՎՈՐ ԱՌԱՋԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿՊ 20-րդ համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960

թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956, էջ 62—67։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Ճառ Մոսկվայի Վ. Ի. Լենինի անվան կենտրոնական ստադիոնում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի օգոստոսի 1-ի համարում։*

Լայն ճանապարհ արտադրության նորարարներին, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի նոյեմբերի 13-ի առաջնորդողը։*

*5. ԲԱԶՄԱԿՈՂՄԱՆԻ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՈՒԹՅԱՄԲ ՍԿՍԵՆՔ ՆՈՐ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՏԱՐՎԱ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԸ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի 20-րդ համագումարին, *Հայպետհրատ, 1956, էջ 81—94։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Գյուղատնտեսական բնագավառի խնդիրները— ՍՄԿՊ 20-րդ համագումարին տված զեկուցումից, *Հայպետհրատ, 1956, էջ 56—64։*

Գյուղատնտեսական աշխատանքների օրացույց, *տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1956 թվականի 11-րդ համարում։*

*6. ԱՐՄԱՏԱՎՈՐԵՆՔ ԱՌԱՋԱՎՈՐ ՓՈՐՁԸ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 20-րդ համագումարի բանաձևը ՍՄԿՊ Կենտրոնական



Կոմիտեի հաշվետու զեկուցման վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956, էջ 62—67։*

Լայնորեն տարածել առաջավոր փորձը գյուղում, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի դեկտեմբերի 12-ի առաջնորդողը։*

*7. ԺԱՄԱՆԱԿԻՆ ՈՒ ԲԱՐՁՐ ՈՐԱԿՈՎ ԿԱՏԱՐԵՆՔ ՏՐԱԿՏՈՐՆԵՐԻ ԵՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄՅՈՒՍ ՄԵՔԵՆԱՆԵՐԻ ՈՒ ԳՈՐԾԻՔՆԵՐԻ ՎԵՐԱՆՈՐՈԳՈՒՄԸ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Գյուղատնտեսության մեքենայացումը ՍՄԿՊ 20-րդ համագումարին տված հաշվետու զեկուցումից, *Հայպետհրատ, 1956, էջ 94—97։*

Մեքենա-տրակտորային կայանների աշխատանքի հետագա բարելավման միջոցառումների մասին: *ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումը, Հայպետհրատ, 1953, էջ 126—136։*

Խորհուրդներ մեխանիզատորներին, *տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 11-րդ համարում, էջ 46—50։*

*8. ԼԱՎ ԽՆԱՄՔԻ ՄԻՋՈՑՈՎ ԱՊԱՀՈՎԵՆՔ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ՄԹԵՐԱՏՎՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ ՄՍՈՒՐԱՅԻՆ ՇՐՋԱՆՈՒՄ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 20-րդ համագումարի բանաձևը ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցման վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին: *Զեկուցում ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հունվարի 25-ին, Հայպետհրատ, 1955։*

Կազմակերպված անցկացնել անասունների ձմռանմսուրային շրջանը՝ *տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 11-րդ համարում։*

## 9. *ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՊԱՇՏՊԱՆՆ Է ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀՈՒՄ* ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌ Միության կառավարության դեկլարացիան Սովետական Միության և մյուս սոցիալիստական պետությունների բարեկամության և համագործակցության զարգացման ու հետագա ամրապնդման հիմունքների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի նոյեմբերի 1-ի համարում։*

Եղբայր ժողովուրդների հզոր դաշինքը *«Պրավդա»-ի դեկտեմբերի 1-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի դեկտեմբերի 2-ի համարում։*

Սովետական Միության և Ռումինական ժողովրդական Ռեսպուբլիկայի կառավարական պատվիրակությունների հայտարարությունը տեղի ունեցած բանակցությունների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի դեկտեմբերի 4-ի համարում։*

---

# Ց Ա Ն Կ

# «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-ՈՒՄ 1956 ԹՎԱԿԱՆԻՆ ՏՊԱԳՐՎԱԾ ՆՅՈՒԹԵՐԻ

## ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ

---

## СОДЕРЖАНИЕ



Խմբագիր՝ Վ. ԲԵՋՆՈՒՆԻ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Խ. ԱԲՈՎՅԱՆ— «Երկերի լիակատար ժողովածու»: Ութ հատորով: Յոթերորդ հատոր: Գինը 24 ռ. 80 կ., 526 էջ, տիրաժ 4.000:*

*Վ. ԲԱԲԱՅԱՆ— «Բողբոջներ»: Գինը 55 կ., 52 էջ, տիրաժ 3.000:*

*Շ. ԹՈՐՈՍՅԱՆ— «Սիրո թևերով»: Գինը 85 կ., 92 էջ, տիրաժ 3.000:*

---


**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 24** **1956 г.**

*ՎՖ 07492* *Պատվեր 992* *Տիրաժ 8300*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8:*

*Գինը 50 կոպ.*